# ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

— Վի՛վա,— ասաց,—
Ու մենք «ողջո՛ւյն» գոչեցինք.
Կանգնած է նա բարձրահասակ,
Բրոնզածույլ, ալացին:
— Կուբա վի՛վա, վի՛վա Կուբա,
Դու քաջ զինվոր Ֆիդելի:
— Արմե՛նիա,— կանչում է նա
Ու ժպտում է մտերմիկ:
Հայացքն այնպես պայծառ է, պարզ,
Ասես ծանոթ ենք վաղուց,
Հյուր է եկել ճամբարը մեր
Ազատության կղզուց:
Նա խոսում է, դուք կարծում եք
Չե՞նք հասկանում մենք նրան.
Նույն իղձերն ու երազներն են,
Որ ձուլել են մեզ իրար:

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# «ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՏԵԿ»

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Անտառներդ ձեռքերի պես
Մեզ իրենց գիրկն են կանչում,
Աղբյուրներդ խոսում, ասես,
Զանգակներ են ղողանջում:
Վզկապների պես ալ-կարմիր
Կակաչներն են փողփողում,
Այն ի՞նչ երգ է բերում քամին՝
Թռչուններն են գեղգեղում:
Ծեփորների ուժեղ կանչից
Նապաստակներն են կորել,
Բայց նայիր այս պարող արջին՝
Թմբուկին է սովորել:
Մինչ ուշ գիշեր խարույկի շուրջ
Ծափ, ծիծաղ է ու նվագ,
Ոսկե երազ, լուսե անուրջ,
Ամեն, ամեն կրծքի տակ:
Խոսքն է հնչում բազմալեզու
Մեր ճամբարում ողջ ամառ,
Վանաձորն է պերճ, հովասուն
Մտերմացնում մեզ իրար:

## ՏՈՆԵՐ

ՀՈՒՆԻՍԻ 1-Ը ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է

Լատիշ երիտասարդ արձակագիր Ալբերտ Բելի ստեղծագործությունները առաջին անգամ մամուլում երևացին 1968 թվականին, երբ Բելը 25 տարեկան էր։ Նրա առաջին գիրքը մեծ աշխուժություն առաջացրեց գրական շրջանակներում, և շուտով Բելի ստեղծագործությունները թարգմանաբար լույս տեսան ռուսերեն և սովետական ժողովուրդների մի շարք լեզուներով։ Այս պատմվածքը թարգմանված է երիտասարդ գրողի առաջին՝ «Քննիչը» ժողովածուից։

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

*Տղայի համար պատերազմն սկսվեց նրանից, որ աքլորներ սկսեցին մորթել։ Աքլորները, արյունոտ վզերով, առանց գլուխների, ընկած էին ամբարի մոտ։ Յոթը աքլոր։ Մեկը դեռ թպրտում էր ու ոտքերով քացի-քացի անում։ Տղան ապուշ կտրած նայում էր թպրտացող աքլորին։ Տարօրինակ էր ու սահմռկեցուցիչ։ Այդ ո՞ւր էր ուզում վազել աքլորը։*

*Տղան գիտեր. աքլորները պիտի տանեին ջրաղացպանին, որ նա ալյուր աղար, այլապես ջրաղացպանը ալյուր չէր աղա։ Իրավունք չուներ։ Որովհետև պատերազմ էր։*

*Քառասուներեք թվականին տղան մոր հետ Ռիգայից տեղափոխվեց գյուղ՝ քեռու մոտ։*

*Տղան հորը հիշում էր որպես հսկայամարմին, ուժեղ մարդու, մազերը՝ խիտ, ափերը՝ տաք։ Հիմա նա հեռու էր։ Իսկ թե ո՞ւր էր, մայրը չէր ասել նրան։ Քառասուներեքին, աշնանը քեռու տանը տեղավորվեցին գերմանացիք։ Տղան խաղում էր բակում։ Գերմանացիները հաճախ էին լավ-լավ բաներ ուտում։ Երբեմըն նրանք տղային կոնֆետ ու շոկոլադ էին հյուրասիրում։ Արտաքնապես վատը չէին, բայց քեռին ասում էր, որ նրանք բոլորն էլ սրիկաներ են ու շուտով կծլկեն այստեղից։*

*Օրերից մի օր, առավոտյան, հեռվում ինչ-որ բան որոտաց, դղրդաց, և քեռին սայլակը բեռնեց ուտելիքով, ճանապարհի համար անհրաժեշտ պարագաներով ու քշեց անտառ։ Նրա հետ գնացին նաև տղան ու մայրը։ Երբ փախստականները մի քանի օրից վերադարձան, գյուղում ռուսները դիմավորեցին նրանց։ Ռուսները շոկոլադ չունեին։ Նրանք կարտոֆիլի պյուրե էին ուտում։ Տղային տվեցին, որ փորձի։ Նա ռուս զինվորների փոքրիկ խոհարարը դարձավ։*

*Զինվորներից մեկը նրան փայլուն կոթով մի դաշույն նվիրեց։ Դաշույնի կոթին հաջորդաբար, տարբեր գույնի պլաստմասսայե թերթեր էին շարված։ Տղան այդ դաշույնով խոցում էր սև ուտիճներին։ Նրանք մագլցում էին սալքարի վրայով ու տղայի համար վագրեր էին։*

*Քեռու տանը տեղավորել էին վիրավորներին։ Տղան մոր հետ մառան տեղափոխվեց։ Նա լսում էր, թե ինչպես էին տնքում վիրավորները, տեսնում էր, թե ինչպես էին կարմրում նրանց սպիտակ վիրակապերը։ Տղան հիվանդանոցային օդ էր շնչում։ Հոտը գարշելի էր։*



Զորանոցի ետևից սանիտարական ավտոմեքենան թեքվեց դեպի գյուղի ճանապարհը, և այդ պահին ուղիղ նրա վրա նետվեց գերմանական կործանիչը: Ինքնաթիռը մի ռումբ շպրտեց ու սև քամու նման շնկշնկալով փախավ լոռենիների վրայով:

Սանիտարական մեքենան շուռ եկավ պայթյունի ալիքից: Տնից պատգարակներով դուրս թափվեցին սանիտարներ, զինվորներ ու սպաներ: Այնտեղ վազեց նաև տղան:

Շուռ եկած ավտոմեքենայից կախ էին ընկել ձեռքեր ու ոտքեր՝ արյունաթաթախ վիրակապերով: Հառաչանքներ, ուժեղ տնքոցներ էին լսվում: Տղան ետ-ետ գնաց, ինչ-որ մեկի սապոգը տրորեց: Զինվորը կանգնել ու ատամները սեղմած նայում էր, թե սանիտարներն ինչպես էին վիրավորներին տեղավորում պատգարակների վրա: Տղան կառչեց նրա ձեռքից: Ձեռքը տաք էր: Ձեռքից վառոդի հոտ էր գալիս: Ցուցամատի ծռվածքի վրայի կաշին կոշտ էր ու փայլուն: Տղան սեղմվել էր այդ տաք ձեռքին:

Ձեռքը շոյում էր տղայի գլուխը: Զինվորը, ավելի շուտ ինքն իրեն, քան տղային դիմելով, ռուսերեն ասաց.

— Ոչինչ: Սրանից վատ էլ է եղել:

Հաջորդ օրը, անքնությունից բորբոքված աչքերով տարեց սանիտարը դուրս տարավ կեղտոտ լաթի մեջ փաթաթած մարդու մի ոտք: Այն թաղեցին ամբարի ետևում: Ո՞նց թե, ոտքն առանց մարդո՞ւ: Այդ միտքը տղային երկար ժամանակ հանգիստ չէր տալիս: Նա փորձեց պատկերացնել. ահա ոտքը վեր կացավ ու գնաց քայլելու, պարելու: Երբ հոսպիտալը տարան, երազին էլ էր գալիս:

Սենյակ է մտնում մարդու ոտքը:

— Ի՞նչ ես ուզում:

— Ես փնտրում եմ մարդուն:

— Քո մարդը հոսպիտալի հետ գնաց:

— Ստում ես,— ասաց ոտքը,— իմ մարդը թաղված է անտառում: Ասա՛, որտե՞ղ է իմ մարդը:

*Ոտքն ավելի է մոտենում: Տղան արթնացավ ու լաց եղավ: Մայրը նրան իր մոտ տարավ:*

*Ի՜նչ սարսափելին էր այդ ոտքը: Իսկ գարնանը Կրանցիս շունը քանդեց-հանեց այն ու քարշ տվեց տարավ թփերի մեջ:*

*Տղան շնից խլեց նրա գտածը:*

*— Չհամարձակվես: Սա մարդու ոտք է: Հո դու մարդակեր չե՞ս:*

*Տղան գտավ բահն ու թաղեց ոտքը:*

*— Հանգի՛ստ քո աճյունին,— ասաց նա, իսկական մեծի նման:*

*Այժմ ոտքն էլ չէր համարձակվում երազում հայտնըվել:*

*Եվ այնուամենայնիվ տղան որոշեց. լավ է, որ պատերազմ է, ինչ ասես, ձեղնահարկում կա: Ամպուլաներ, շպրիցի ասեղներ, նույնիսկ՝ շպրից... Զվարճալի բաներ էին: Մի անգամ, քեռին մտավ խոհանոց, իսկ բաց գրքի մեջ թողեց իր չիբուխը: Տղան չիբուխի մեջ ջուր պզզացրեց: Չիբուխը հանգավ: Ա՜յ թե զարմացավ քեռին: Ինչո՞ւ հանկարծ թութունը թըրջվեց: Երևի, էլի էդ թոկից փախածն է օյին խաղացել:*

*Իսկ խենթուկը շատ էր ուրախանում: Նման բաներ երբեք էլ չէին լինի, եթե պատերազմը չլիներ:*

*Բա փամփուշտնե՜րը: Ամեն քայլափոխի հանդիպում էր: Տղան ժամերով դրանցով զբաղվում էր ամբարի ետևում: Գնդակը հանում էր պարկուճից, վառոդը դուրս էր թափում, մի քիչ թողնում մեջը, ամենատակը, հետո գլխիկը պարկուճին էր հագցնում ու վրան վառոդ լցնում: Պարկուճը մտցնում էր հողի մեջ, բերում էր լուցկին: Հրաշալի կրակոց: Եվ փամփուշտը սուլոցով թռչում էր վերև:*

*Ափսոս, մոտերքում ոչ մի թնդանոթ չէր մնացել, թե չէ նրանով ծառերի վրա կկրակեր: Բայց թնդանոթ չկար, և տղան տախտակի կտորից մի ավտոմատ շինեց ու սկսեց վազվզել բակով մեկ՝ կրակելով այն ամենի վրա, ինչ հանդիպեր ճանապարհին:*

*Փոստատարը մոխրագույն ծրարով մի նամակ բերեց: Մայրը պատռեց այն ու կարդաց:*

*— Իսկ ինչո՞ւ են տառերը տպագրված,— զարմացավ տղան:— Մի՞թե հայրիկը հիմա գրքեր է տըպագրում:*

*Մայրը լուռ էր:*

*— Ես ուզում եմ կարդալ սովորել: Ես ինքս եմ ուզում կարդալ հայրիկի նամակները,— շարունակեց տղան:*

*— Էլ նամակ չի գա,— ասաց մայրը:— Պատերազմը վերջացել է:*

*— Իսկ ո՞ւր է հայրիկը:*

*— Նա հաղթեց:*

*Մայրն արտասվեց: Տղան մտորմունքի մեջ գնում գալիս էր բակում:*

Թարգմ. ՀԱՅԿ ՄԱՐԳԱՐՅԱՆԻ



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



# Արկադի Գայդար

(ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Արկադի Գոլիկովը տասներեք տարեկան էր, սովորում էր Արզամասի ռեալական ուսումնարանի երրորդ դասարանում, երբ տեղի ունեցավ 1917 թվականի Փետրվարյան հեղափոխությունը: Տասներեք տարեկան պատանին, աշակերտական կոմիտեի նախագահ էր և օգնում էր բոլշևիկներին: Նրան հրացան էին վստահել՝ 302989 համարը կրող մի հրացան: Այդ օրերին հեղափոխական շտաբի հանձնարարությունը կատարելիս Արկադի Գոլիկովը կրծքից վիրավորվեց: Թշնամու դանակի այդ հարվածը նրա առաջին մարտական մկրտությունն էր: Իսկ մի տարի անց՝ 1918 թվականին 14-ամյա Արկադի Գոլիկովը մեկնեց ճակատ: Կյանքում առաջին անգամ նա ստեց, ասելով, որ տասնվեց տարեկան է: Երբ նա իսկապես 16 տարեկան դարձավ, արդեն գնդի հրամանատար էր: Նրա պատանեկությունն անցավ Քաղաքացիական պատերազմի թոհուբոհում: Արկադի Գոլիկովը՝ ապագա գրող Արկադի Գայդարը, ճաշակեց վիշտ ու դժվարություններ, ընկերների կորուստ և հաղթանակի բերկրանք, ամբողջ հոգով կապվեց իր մարտական ընտանիքին: Նա մտադրվել էր ամբողջ կյանքը նվիրել զինվորական գործին: Բայց 1928 թվականին լուրջ հիվանդացավ: Իրեն զգացնել էր տալիս գլխի հին կոնտուզիան: Երկար ժամանակ նա բուժվում էր, իսկ 1924 թվականի ապրիլին, երբ լրացել էր Արկադի Գոլիկովի քսան տարին, բժշկական հանձնաժողովի որոշմամբ նա զորացրվեց: Նա չէր պատկերացնում իր կյանքը Կարմիր բանակից հեռու, մինչդեռ հիմա պահեստի գնդապետ էր: Տխուր ու հուսահատված, նա նամակ գրեց Միխայիլ Վասիլևիչ Ֆրունզեին: Նամակում նա ոչինչ չէր պահանջում, ոչնչից չէր գանգատվում: Պարզապես հրաժեշտ էր տալիս Կարմիր բանակին: Նշանավոր պրոլետարական զորավարն ու ժողովրդական կոմիսարը իր մոտ կանչեց Գոլիկովին: Նա նկատել էր նամակի հեղինակի մեջ գրելու ձիրք: Ֆրունզեն շնորհակալություն հայտնեց նրան, խորհուրդ տվեց գրել: Հետագայում Գայդարը սիրում էր կրկնել, որ Ֆրունզեն եղել է իր առաջին խմբագիրը: Արկադի Գոլիկովը դարձավ Արկադի Գայդար: Մոնղոլ հեծյալները Գայդար են անվանում ջոկատի առջևից սլացողին: Գրական անվան ընտրությունը պատահական չէր: Իր ամբողջ կյանքում Գայդարը հավատարիմ մնաց իր ընտրած անվանը: Հեշտ ու հանգիստ չէր Գայդարի գրական ուղին: Առաջին տպագրված ստեղծագործությունները չէին գոհացնում հենց իրեն՝ հեղինակին:

1926 թ. լույս տեսած «Ռ. Վ. Ս.» պատմվածքը Գայդարը առաջին անգամ հասցեագրեց երեխաներին: Դա հուզիչ պատմություն էր ռևոլյուցիոն պայքարի բարձր ռոմանտիկայի, ռազմաճակատային ընկերության, զինվորի դաժան ճակատագրի մասին: Նա ուզում էր դպրոցական տղաներին ու աղջիկներին պատմել այն ամենը, ինչին ինքը ականատես էր եղել:

1930 թ. Գայդարը գրեց մեր մանուկների ամենասիրած գրքերից մեկը՝ «Դպրոցը»:

Այնուհետև իրար ետևից լույս տեսան «Չորրորդ բլինդաժը», «Հեռավոր երկրներ», «Զինվորական գաղտնիք», «Երկնագույն գավաթ», «Թմբկահարի ճակատագիրը», «Ծուխ անտառում», «Չուկ և Գեկ» հիանալի գրքերը:

Պատանի ընթերցողներին հարազատ է Գայդարի գրքերի ռոմանտիկ շունչը, այն ազնվությունն ու անկեղծությունը, որով գրողը դիմում է նրանց: Նրա գրքերն օգնում են պատանիներին ու աղջիկներին կյանքում գտնելու իրենց տեղը: Ստեղծագործ աշխատանքի թեման Գայդարը ներբողում է նույն բանաստեղծական շնչով, ինչպես պայքարի, հերոսության թեման:

1940 թ. Գայդարը գրեց «Թիմուրը և իր ջոկատը» վիպակը:

Համարձակ, ազնիվ Թիմուրը մի կերպար է, որին ցանկանում են ընդօրինակել միլիոնավոր պատանիներ: Ոչ մի մանկական գիրք չի արժանացել այդ ճակատագրին: Տարերային կերպով սկսվեց թիմուրականների շար-

ժումը: Մեր երկրի բոլոր ծայրերում պատանի թիմուրականները Թիմուրի օրինակով մեծ ու օգտակար գործեր են կատարում:

Երբ սկսվեց Հայրենական պատերազմը, Գայդարը որպես զինվորական թղթակից մեկնեց հարավարևմտյան ճակատ: Հավատարիմ մնալով իրեն, զինվորի իր պարտքի գիտակցությանը, Գայդարը մնաց պարտիզանների ջոկատի հետ, չնայած նրան առաջարկում էին օդանավով թշնամու թիկունքից անցնել յուրայինների մոտ:

1941 թ. հոկտեմբերի 26-ին չորս պարտիզանների ուղեկցությամբ Գայդարը մեկնեց հետախուզության Լեպլյովա գյուղի մոտակայքը: Նա գնում էր առջևից: Թշնամու մի մեծ ջոկատ դարան էր մտել կարևոր ճանապարհի անցման մոտ: Երբ փոքրիկ պարտիզանական ջոկատը լուսաբացին հասավ թշնամու թաքստոցին, Գայդարը առաջինը նկատեց թշնամուն: Նա վայրկենապես հասկացավ, որ միայն իր մահը կփրկի ընկերներին: Ամբողջ հասակով կանգնելով, ձեռքը վեր բարձրացրած, Գայդարը նետվեց առաջ.

— Իմ ետևի՛ց:

Թշնամու գնդացրի կրակահերթը անցավ նրա սրտի միջով:

Այդպես զոհվեց մեծ գրողը՝ զենքը ձեռքին, իր կյանքով հաստատելով իր գրած յուրաքանչյուր տողի ճշմարտացիությունը:

*ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ*




*ԱՐԿԱԴԻ ԳԱՅԴԱՐ*

*Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՈՒԽԼՅԱՆԻ*

Նինա Կարնաուխովան հանրահաշվի դասը չէր սովորել և որոշեց դպրոց չգնալ: Բայց միաժամանակ վախենում էր, որ ծանոթներից մեկնումեկն իրեն կտեսնի օրը ցերեկով գրքերը թևի տակ փողոցներում թափառելիս: Վախվորած շուրջը նայելով, նա ուղղվեց դեպի մոտակա պուրակը: Այնտեղ գրքերն ու նախաճաշի փաթեթը դրեց թփի տակ ու սկսեց վազել գեղեցիկ, գույնզգույն թիթեռի ետևից: Վազեց, վազեց և հանկարծ նրա դիմաց դուրս եկավ մի փոքրիկ տղա: Տղան նայում էր նրան հավատով ու բարությամբ լի աչքերով: Նինան նայեց նրա ձեռքի այբբենարանին, ենթադրեց, որ նա էլ է դասից փախել ու որոշեց ծաղրել նրան:

— Խղճո՜ւկ փախստական,— խստորեն ասաց նա,— այդքան փոքր ես և արդեն սկսել ես ծնողներիդ և ուսուցիչներիդ խաբե՛լ:

— Ո՛չ,— զարմացած պատասխանեց փոքրիկը,— ես դպրոց էի գնում, մի մեծ շուն հանդիպեց, սկսեց հաչել... Ես էլ փախա ու կորցրի ճանապարհը:

Նինան խոժոռվեց: Բայց տղան այնքան էր միամիտ ու բարեհոգի, որ Նինան ստիպված բռնեց նրա ձեռքն ու թփերի արանքով առաջ տարավ: Իր դասագրքերն ու նախաճաշը մնացին թաքստոցում: Ամաչեց տղայի մոտ հանել դրանք: Ծլյուղերին, տերևներին քսվելով՝ շունը առաջ եկավ, հոտոտեց, գրքերին չընդիպավ, բայց կերավ ամբողջ նախաճաշը:

Նինան վերադարձավ, նստեց խոտերի վրա ու լաց եղավ: Նախաճաշի համար չէր լալիս: Ոչ: Չափազանց ուրախ էին դայլայլում թռչնակները, իսկ սիրտը տխուր էր: Խիղճը սաստիկ տանջում էր:



# Ի՞ՆՉ ԿԱՐՈՂ Է ԱՆԵԼ ԵՐԱԺԻՇՏԸ

*ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ*

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Երաժիշտը կարող է լսել
Ձյուների մեջ թաքնված ջրերի երգը,
Ջրերի մեջ թաքնված գույների շշուկները,
ԵՒ այն խոսքերը,
Որ արևն է ասում ձմռան ականջին:

Նա կարող է լսել
Այն կախարդական խոսքերը,
Որ արևն ասում է ծառերի ականջին
Ու ծառերը հագնում են կանաչ,
Այն խոսքերը, որ արևն ասում է դաշտերին
Ու դաշտերը ծածկվում են խոտերով:

Երաժիշտը կարող է լսել ծաղիկների երգը,
Եվ այն երգը, որ թիթեռները նրգում են
Ծաղիկների ականջին,
Եվ սրտիկի տաք տրոփյունը
Ձվի միջից դեռ դուրս չելած ճնճղուկի:

Երաժիշտը կարող է լսել այն խոսքերը,
Որով թռչունները օրհներգում են գարունը,
Որով ծառերը փառաբանում են արևին,
Որով ծարավ արմատները կանչում են
Անձրևով լցված հեռավոր ամպերին:

Նա կարող է լսել այն խոսքերը,
Որ անձրևը շշնջում է հատիկների ականջին,
Որից արթնանում են հատիկները
Եվ ցորենի հասկեր են շարում
Հունիսյան օրերի մեջ:

Երաժիշտը կարող է այնպիսի երգեր գրել,
Որ մեզ թվա, թե գտնվում ենք այգում,
Լսում ենք ծղրիդների երգը,
Զգում ենք, թե ինչպես են հասունանում մրգերը
Եվ ողկույզները ինչպես են աչքով անում
Սրտաձև տերևների միջից:

Նա կարող է այնպիսի երգեր ստեղծել,
Որոնք լսելիս մեզ թվա,
Թե գտնվում ենք ծովափին,
Թե լսում ենք ալիքների աղմուկը,
Շնչում ենք ծովի աղի բուրմունքը
Եվ զգում ենք, թե ինչպես են
Նավակները լողում ալիքների վրայով:

Երաժիշտը կարող է այնպիսի երգեր գրել,
Որոնք լսելիս մեզ թվա,
Թե գտնվում ենք անտառում.
Շնչում ենք լորենիների բուրմունքը,
Լսում ենք տերևների սոսափը
Եվ զգում ենք, թե ինչպես է
Սկյուռը նայում
Դարավոր ծառի իր փչակից:

Նա կարող է այնպիսի հնչյուններ ստեղծել,
Որ մեզ հասնի հեռավոր ջունգլիների շունչը
Եվ ճյուղից-ճյուղ ցատկոտող
Կապիկների հռհռոցը:

Ահա այսպես երաժիշտը կարող է
Այնպիսի երգեր գրել,
Որոնք դուր գան մեծերին ու փոքրերին,
Որոնք փոքրերին պարուրեն
        կախարդական հնչյուններով
Եվ նրանց անմեղ հոգիները լցնեն
Գեղեցիկը սիրելու զգացումով:




ույրիկ Անիկը կախ կատարով աքաղաղը բա նվեր կտանե՞ր, եթե իմանար, թե ինչ խաղ է սարքելու իր գլխին այդ անպիտանը...

Նա աշնանը կարմրաթուշ ալանի էր սարքել, սուջուխ էր եփել, կախել մառանում, իրենց գյուղի պոպոքն արդեն հայտնի բան էր (նույնիսկ աշուղները երգ էին հորինել վրան), պոպոքը չխկչխկալով լցրել էր տոպրակների մեջ, ծիրան էր փռել կտուրին, չորացրել, չիր պատրաստել և, քանի որ Նոր տարին մոտենում էր, նա այդ բոլորից բաժին հանեց իր փոքր քրոջը՝ Ազգուշին և, այն է, ուզում էր նստել տղայի մեքենան, որպեսզի բերքն ու բարիքը պայուսակի մեջ դրած Երևան գնա, երբ հանկարծ նկատեց բակում քուջուջ անող կախ կատարով աքաղաղին: Արևամուտ էր: Տների կըտուրներին դիզված ձյունը գնալով ավելի էր կարմրում ու գյուղի խաղաղ անդորրը խախտում միայն տըղայի «Զապորոժեցի» դողոցը:

— Լսի՛ր,— ասաց նա ընկի մոտ նստած տղային,— մի էն կախ կատարով աքլորին բռնի՛ր:

— Աքլորն ի՞նչ ես անում:

— Բռնի՛ր, քո գործը չէ՛:

— Մայր, նա ի՞նչ աքլոր է: Էսպես՝ փոքըր-մոքր...

— Ծուղրուղու կանչում է՝ բավական է,— ասաց մայրը մեքենայի մեջ տեղավորելով:— Քաղաքի երեխեքը ծուղրուղուն միայն հեռուստացույցից են լսում: Կտանեմ, թրոջս երեխեքը կուրախանան:

Եվ այդպես նրանք ալանիով, սուջուխով, պոպոքով, չիր ու չամիչով և Անիկի ոտքերի արանքում կուչ եկած, կատարը կախ աքլորով եկան հասան Երևան քաղաքի կենտրոնն ու վերելակով ելան բազմահարկ շենքի չգիտես որերորդ հարկը:

Քույրիկ Ազգուշը շատ ուրախացավ: Նա նույնիսկ աչքաթող արեց, որ Անիկը՝ աքաղաղը թևի տակ, կեղտոտ ոտնամաններով տրորում էր Նոր տարվա համար հատուկ փայլեցված հատակը, սենյակից-սենյակ անցնում և այնպես էր ամեն ինչ զըննում ու նայում, կարծես առաջին անգամը լիներ: Եվ հայտնի չէ, թե ինչքան կպտտվեր քույրիկ Անիկը, եթե հանկարծ աքլորը դժգոհ չկոթացներ:

— Սա ինչո՞ւ ես բերել,— նկատելով, զարմացավ Ազգուշ քույրիկը:— Էստեղ չկա՞...

— Էստեղինը ցելոֆանե տոպրակի մեջ է,— լայն ժպտաց Անիկը,— իսկ սա ծուղրուղու կկանչի՝ երեխեքը երկու օր կուրախանան, Նոր տարուն կըմորթենք:

— Դրա եղածն ի՞նչ է, որ մորթես,— բանիմաց ասաց Ազգուշ քույրիկը:

— Ես ի՞նչ մեղք ունեմ,— արդարացավ Անիկը:— Քանի տարվա աքլոր է: Բնությունն էլ սրան էսպես է ըստեղծել: Համ էլ կարևորը քաշը չի, կարևորը ծուղրուղուն է: Երեխեքն ո՞ւր են, թող գան տեսնեն:

— Ո՞ւր են,— զարմացավ Ազգուշը:— Քնած են, ո՞ւր են...

Նրանք ալանին, չիր ու չամիչը, ընկույզըն ու սուջուխը տեղավորեցին ուր հարկն է, բայց աքլորի համար մնացին շվարած, որտե՞ղ պետք է պահեին...

Պատշգամբը բաց էր, ցուրտ էր ու ձյունոտ, խոհանոցում՝ վախեցան այս ու այն կողմ թռնի, տակնուվրա անի ամեն ինչ: Երկար միտք անելուց հետո ելքը գտան. Ազգուշը լողարանում փակեց կախ կատարով աքաղաղին: Հետո քույրերը շաքարը կրծելով թեյ խմեցին, խաղաղ զրուցեցին: Միայն Ազգուշ քույրիկը երբեմն խոսքը կիսատ էր թողնում, գնում, զգուշությամբ բացում էր լողարանի դուռն ու նայում: Երևի անհանգստանում էր՝ հո չի՞ աղտոտում: Բայց չէ, ամեն նայելիս նա աքաղաղին տեսնում էր խոհուն, մտածկոտ հայացքը հառած մեկ՝ չեխական կանաչ սալիկներով լողարանի պատին, մեկ՝ հուն-



*ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

գարական լվացարանին, մեկ՝ լեհական փայլփլուն ծորակին, մեկ՝ գերմանական ցնցուղին: Մի բան միայն փոքր-ինչ զարմացրեց քույրիկ Ազգուշին. ամեն նայելիս նա նկատում էր, որ աքլորի կախ ընկած կատարը գնալով ցցվում է, կարմրում ու բմբուլները գնալով փքվում, ցցվում են: «Տաք տեղ է ընկել, դրանից է»,— մտածում էր Ազգուշ քույրիկը:

* * *

Առավոտյան Ազգուշը բոլորից վաղ արթնացավ և առաջին բանը, որ հիշեց՝ աքլորն էր:

— Աղտոտած կլինի անպիտանը,— փնթփնթաց քթի տակ, արագ-արագ լողարան գնաց ու զարմանքից քար կտրեց. աքլորը՝ կատարը ցից, թևերը մեջքին դրած, հպարտ ու դանդաղ ետ ու առաջ էր քայլում լողարանում և երբեմն ինչ-որ բան կռթացնում քթի տակ: Ճիշտ է, աղտոտել էր կարմրակատարը, բայց դա արել էր միշտ նույն տեղում՝ դռան անկյունում:

Ազգուշը գնաց արթնացրեց քույրիկ Անիկին, ձեռքից բռնած լողարան բերեց:

— Ծուղրուղու կանչե՞լ է,— հարցրեց Անիկը:

— Ի՞նչ ծուղրուղու... Դու աքլոր ես բերե՞լ, թե՞ պրոֆեսոր: Մի սրա՛ն նայիր...

— Գյուղում էնպես ծուղրուղո՜ւ էր անում... Ուր որ է՝ կկանչի: Երեխաներին արթնացրո՛ւ:

Ազգուշը երեխաներին հագցրեց, բերեց, նրանք շատ ուրախացան, ցանկացան գրկել, շոյել աքաղաղին, մորաքույրը չթողեց.

— Մի՛ խանգարեք: Հիմա ծուղրուղու է կանչելու:

Լող երեխաներ էին, ականջը սպասվող ծուղրուղուի կողմը՝ լվացվեցին, նախաճաշեցին, բայց ծուղրուղուն չկար ու չկար: Ծուղրուղուի փոխարեն այդ բմբուլները ցցած, փոքրամարմին կարմրակատարը, ձեռքերը մեջքին, հիմա արդեն ճեմում էր սենյակիցսենյակ և կարծես թե հենց այստեղ էր ձվից դուրս եկել՝ մեծացել, աքաղաղներին հատուկ գոռոզությամբ, անտարբեր, հայացքն անհայտ հեռուներին, ոչ ոքի չէր նկատում, միայն երբեմն կռթացնում էր քթի տակ: Ի՞նչ իմանային խեղճ երեխաները, որ նա այլևս իրեն աքլոր չէր համարում: Թե ի՞նչ էր համարում՝ ինքը կարմրակատարն էլ կարգին չգիտեր, որովհետև ընդամենը մի գիշեր էր անցկացրել բազմահարկ շենքի հունգարական լվացարանով, չեխական սալիկներով, լեհական ծորակով ու գերմանական ցնցուղով լողարանում: Այդպես էլ երեխաները ծուղրուղուին կարոտ մնացին: Ճիշտ է՝ հարևանի երեխաներին իրենց տուն բերեցին, պտտվեցին աքաղաղի շուրջը և անընդհատ հարցնում էին.

— Մորաքո՛ւյր, սա ծուղրուղու կանչո՞ւմ էր...

Այնքան հարցրեցին, որ Անիկ քույրիկն էլ սկսեց կասկածել:

— Ոնց որ թե՝ կանչում էր:

Հետո երեխաները ձանձրացան ծուղրուղուն մոռացած աքլորից, աչքաթող արեցին ու սկսեցին ուրիշ խաղեր խաղալ:

Երեկոյան Անիկ քույրիկի տղան եկավ մոր ետևից:

— Շո՛ւտ արա,— ասաց արագ-արագ,— մթնով գնալը դժվար է, ճանապարհին սառույց է:

Անիկ մորաքույրը համբուրեց քրոջը, երեխաներին, սեղմեց փեսա Տիգրանի ձեռքը և ուզում էր գնալ՝ փեսա Տիգրանը չթողեց.

— Աքլորին ե՛տ տար:

— Կկանչի,— ամաչելով թոթովեց Անիկը:

— Չէ՛,— ասաց Տիգրանը:— Սա, որ մի օրում իր աքլոր լինելը մոռացավ՝ էլ ծուղրուղու չի կանչի ու ինչ էլ անի՝ տնազ է լինելու:

Եվ Անիկ քույրիկը կարմրակատարին թևի տակ խոթելով, տանից դուրս եկավ:




## ՄԱՅՐԻԿԸ ԼԱՎ ԴԱՍ ՏՎԵՑ

Առավոտյան մայրիկը նախաճաշի սեղան պատրաստեց: Նարինեն ու Նունեն մոտեցան սեղանին, սկսեցին ուտել: Իսկ Համիկը խռովել, նստել էր անկյունում:

— Ե՛կ նախաճաշելու,— ասաց մայրիկը:

Համիկը մոտ չեկավ: Ուզում էր նորից խնդրեն, շատ խնդրեն: Բայց այլևս խնդրող չեղավ: Ընդհակառակը, մայրիկը նրա նախաճաշն էլ բաժանեց երկու մասի, տվեց Նարինեին ու Նունեին:

Համիկը նստել, աչքի պոչով նայում էր, թե ինչպես են նրանք իր բաժինն ախորժակով ուտում:

Մայրիկը դրանից հետո միշտ այդպես էր վարվում, երբ Համիկը խռովում և հրաժարվում էր ուտել: Համիկը ստիպված վերջ տվեց այդ վատ սովորությանը:

*ՂԱԶԱՐՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ* *Հոկտեմբերյան, 3-րդ դաս. աշ.*

*Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



## ՔԱՄԻՆ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Քամին եկավ,
Անե՜ց, աճե՜ց,
Ցնցեց բաշը,
Մեջքը շտկեց,
Պտույտ եկավ
Ծուրջը լեռան,
Դարձավ հարյուր,
Հազար բերան:
Փչե՜ց,
Պոկե՜ց,
Գրկեց,
Տարավ՝
Հասկի,
Խոտի,
Փոշու ծարավ...
Ու մինչ ծառը
Ծառին կգար,
Քամու հետքը
Վաղուց չկար...

## ԳՆԱ՛, ԱՆՁՐԵ՛Վ

ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

Անցի՛ր նորից հանդ ու սարով,
Գնա՛, անձրև՛, գնա՛ բարով:
Գնա՛ իջիր ծարավ արտին,
Թող շաղոտվի կանաչ բարդին,
Թող ծարավը կոտրի հողի,
Թուփը խշշա թող խաղողի:
Գնա՛, գնա՛ հովիտ ու հանդ,
Իմ զո՛վ անձրև, իմ աղամա՛նդ:



## ՀԱՆՑԱԳՈՐԾ ՀՈՐԹԸ

*ՇՄԱՎՈՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Մթին անտառի
Մի խուլ բացատում,
Դատավոր արջը
Հորթին էր դատում:
— Հո՛րթ,— ասում էր,— քեզ
Չեմ կարող ների,
Քանզի դու ծառի
Կատարն ես եղել,
Եվ հասած բոլոր
Տանձերը կերել:

## ՀՆՁՎՈՐԸ

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

Զրնգում է սուր գերանդին
Ձեռքում Սուրեն քեռու,
Հունձ է անում անա կրկին
Նա սարերում Լոռու:
Սարալանջը՝ բաց էջ գրքի,
Եվ նա ձեռքով բարի
Երգն է գրում աշխատանքի,
Առանց խոսք ու բառի:
Խոտ է հնձում. սար ու հովիտ
Ծաղկունքով են բուրում,
Լեռը՝ ինչպես ծերուկ հովիվ՝
Քարացել է վերում:
Լորն է թռչում ոտքի տակից.
Բնում ճտեր չկան,
Մեծացել են, թևել արդեն,
Որ տուն ու տեղ դառնան:
Ու ժպտում է քեռին, հրճվում.
— Թե աշխարհն է խաղաղ,
Բույն կունենա ամեն թռչուն,
Ու ամեն մարդ՝ օջախ:



## ՊԻՈՆԵՐ — փոստիկ

### ԳՐԻՉԸ ԵՎ ՍՏՈՒՅՆ

Մի անգամ ընկերներիցս մեկը (անունը չեմ հիշատակում) վերցրեց իմ գրիչը: Ես նկատեցի, բայց ոչինչ չասացի: Հաջորդ օրը ես նոր գրիչ բերեցի: Բերեցի նաև «Պիոներ» ամսագրի 1972 թ. 11-րդ համարը, ուր տպագրված է Վ. Գրիգորյանի «Գիրքը» պատմվածքը:

— Դու կարդացե՞լ ես այս համարը,— դիմեցի նրան,— շատ հետաքրքիր նյութեր կան: Ա՜յ, այս մեկը շատ ավելի լավն է, ուզո՞ւմ ես կարդալ:

Նա չհրաժարվեց: Նա լուռ կարդաց և ամսագիրը ինձ վերադարձրեց.

— Շնորհակալություն, շատ լավն էր:

Այդ օրը նա ոչինչ չասաց:

Հաջորդ օրը, երբ սկսվեց առաջին դասը, նա պայուսակից հանեց երկու գրիչ և մեկը լուռ մեկնեց ինձ:

*ԴԱՆԻԵԼՅԱՆ ՀԱՅԿԱՆՈՒՇ*

*Էջմիածնի շ., գ. Ն. Խաթունարխ, 7-րդ դաս.*






(ՀԵՔԻԱԹ)

Մի արևոտ, գեղեցիկ օր մի տղա գնում էր ճանապարհով: Նա երկու ոսկեդրամ ուներ գրպանում:

Նրան հանդիպեց մի ֆերմեր, որի ձեռքին զամբյուղ կար:

— Դու գոնե մի պեննի ունե՞ս,— հարցրեց ֆերմերը:

— Ո՛չ,— պատասխանեց տղան:— Ես երկու ոսկեդրամ ունեմ, եղբայրներս են տվել ու ինձ դուրս են արել տնից, ասելով, թե ես անխելք եմ: Նրանք ինձ Անխելք են անվանում:

Երբ ֆերմերը լսեց, որ Անխելքը երկու ոսկեդրամ ունի և տեղով անխելք է, ասաց.

— Տես ի՜նչ հրաշալի սագ է: Սա աշխարհի ամենահրաշալի սագերից է: Տո՛ւր ինձ քո ոսկեդրամները, և ես քեզ կտամ սագն ու զամբյուղը:

Անխելքը մտածեց, որ սագը իրոք լավն է: Նա ֆերմերին տվեց իր ոսկեդրամները և վերցրեց սագն ու զամբյուղը:

Հենց այդ ժամանակ Անխելքը մի մեծ, շքեղ տուն տեսավ և ֆերմերին հարցրեց.

— Այն ի՞նչ տուն է բլրի վրա:

— Դու չգիտե՞ս, թե դա ինչ է,— զարմացած բացականչեց մարդը,— իրոք որքան հիմար ես: Դա թագավորի պալատն է:

— Ուրեմն սա թագավորի պալա՞տն է,— բացականչեց Անխելքը,— այդ դեպքում ես կտանեմ իմ սագը պալատ ու կնվիրեմ թագավորին:

Անխելքը, զամբյուղը ձեռքին, գնաց դեպի պալատ: Հասավ պալատի դարպասի մոտ կանգնած զինված պահապանին և ասաց.

— Սա աշխարհի ամենահրաշալի սագերից մեկն է, և ես տանում եմ թագավորին նվիրելու:

— Եթե դու ուզում ես այդ սագը տանել թագավորին, ապա դրա կեսը ինձ պետք է տաս: Ինչ անցնում է այս դռնով, կեսն իմն է:

— Ինչպե՞ս անեմ ես,— բացականչեց Անխելքը:— Ես չեմ կարող սագի կեսը տանել թագավորին նվեր:

— Ես կասեմ, թե ինչ անես,— ասաց սպասավորը:— Տար սագը թագավորին: Երբ նա քեզ պարգև առաջարկի, խնդրիր նրանից ոսկեդրամներ և կեսը բեր, տուր ինձ:

Անխելքը համաձայնեց, և պահապանը դարպասից ներս թողեց նրան:

Դեպի թագավորի սենյակը տանող մարմարյա աստիճանների մոտ մի այլ սպասավոր էր կանգնած:

— Սա աստիճանավանդակի պահապանն է,— ասաց առաջին սպասավորը տղային:— Ցո՛ւյց տուր թագավորի համար բերած նվերը:

Երբ Անխելքը աստիճանավանդակի պահապանին ցույց տվեց իր սագը՝ նա ասաց.

— Հրաշալի սագ է: Ես աստիճանավանդակի պահապանն եմ, և այն ամենի կեսը, ինչ բարձրանում է այս աստիճաններով, պատկանում է ինձ:

Անխելքը համաձայնեց իր պարգևի մյուս կեսը տալ այս սպասավորին:

Սպասավորները նայեցին միմյանց և ծիծաղեցին: «Ի՜նչ հիմար տղա է»,— մտածեցին նրանք և տղային ուղեկցեցին մինչև թագավորի սենյակը:

Անխելքը ներս մտավ, խոնարհվեց և սագը տվեց թագավորին:

— Սա լավ նվեր է,— ասաց թագավորը,— ի՞նչ ես ուզում սրա դիմաց:

— Ոկեդրամնե՛ր խնդրիր,— շշնջաց դարպասի պահապանը:

— Ոսկեդրամնե՛ր խնդրիր,— շշնջաց աստիճանավանդակի պահապանը:



*Բայց Անխելքն ասաց քաղաքավարությամբ.*

*— Ես ուզում եմ մի լավ ծեծ տաք ինձ, ձե՛րդ մեծություն։*

*— Հիմար մի՛ եղիր,— ասաց թագավորը,— ինչու՞ ես ծեծ ուզում։*

*Անխելքը միայն կրկնում էր.*

*— Ինձ մի լավ ծե՛ծ տվեք։*

*Թագավորը հրամայեց զինվորներին այդ հիմար տղային մի լավ ծեծ տալ։*

*Անխելքն արագ ասաց.*

*— Բայց պարգևն իմը չէ, ձե՛րդ մեծություն։ Ես խոստացել եմ պարգևի մի կեսը տալ դարպասների պահապանին, իսկ մյուս կեսը՝ աստիճանավանդակի պահապանին։*

*Թագավորը շրջվեց դեպի սպասավորները և ասաց.*

*— Լավ, դուք կստանաք այն։ Ձեզնից յուրաքանչյուրը կստանա ծեծի կեսը։*

*Երբ զինվորներն ու սպասավորները գնացին, թագավորը կանչեց Անխելքին և հարցրեց.*

*— Տղա՛ս, ի՞նչ է անունդ։*

*— Իմ երկու եղբայրներն ինձ Անխելք են անվանում, ձե՛րդ մեծություն,— պատասխանեց տղան։— Նրանք ասում են, թե ես հիմար եմ և դրա համար ինձ վռնդել են տնից։*

*— Ես համաձայն չեմ եղբայրներիդ հետ,— ասաց թագավորը։— Ես կարծում եմ, որ դու խելացի տղա ես։ Այժմ ես քեզ ոսկուց ավելի լավ պարգև կտամ։ Դու կդառնաս իմ գլխավոր մինիստրը։*

*Անգլ. թարգմ. ԳԱՅԱՆԵ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*





# ԻՆՉՈ՞Ւ ԷՐ ՆԱ ԻՆՔՆԱՄՓՈՓ

*ՎԱՀԵ ՊՈՂՈՍՅԱՆ*

**— Ինչո՞ւ ես «երկուսներ» ստանում,— հարցրեցի Հակոբիկին։**

**Ինձ հետաքրքրում էր, թե ինչո՞ւ երեք տարի գերազանց գնահատականներով սովորած աշակերտը չորրորդ դասարանում հանկարծ սկսել է «երեքներ» ու «երկուսներ» ստանալ։**

**— Պատճառներ չկան,— ասաց Հակոբիկը, քիթը կնճռոտելով։ Հետո անվստահ հարցրեց.— Թերթի մեջ ինձ պետք է խայտառակե՞ք...**

**— Ո՞վ է այդպիսի բան ասել,— զարմացա ես։**

**— Երեխաները խոսում էին, որ թերթից մարդ է եկել, որպեսզի ինձ խայտառակի...**

**— Երեխաները սխալվում են։ Ինչո՞ւ խայտառակել։ Ես ուզում եմ միայն զրուցել քեզ հետ։ Եթե հոդված էլ գրեմ, հոդվածում քո անունը կփոխեմ, դպրոցն էլ չեմ նշի։ Ինձ պարզապես քո վատ սովորելու պատճառներն են հետաքրքրում։**

**Սկզբում Հակոբիկը շատ անվստահ էր ու զգույշ։ Հետո աստիճանաբար մտերմացանք։ Կարծում էի տանը որևէ բան պատահած կլինի։ Ոչինչ չկար։ Ծնողները հաշտ էին, տանը վեճ ու կռիվ չկար, հայրը հարբեցող չէր։**

**— Դպրոցը չեմ սիրում,— ի վերջո անկեղծացավ նա։**

**— Ինչո՞ւ։**

**Ուսերն է վեր քաշում՝ չեմ սիրում։**

**— Եթե չես սիրում, էլ ինչո՞ւ ես դպրոց գալիս։**

**Զարմացավ.**

**— Ինչպե՞ս չգամ...**

**Պարզվեց, որ նրան դպրոց բերողը միայն ծնողներից ունեցած վախն է։**

**— Ի՞նչ ես դառնալու։**

— Կոնստրուկտոր,— ասաց նա, քաշվելով, բայց վստահ իր ասածին։

— Առանց սովորելու ինչպե՞ս կարող ես կոնստրուկտոր դառնալ։

— Ինստիտուտում կսովորեմ՝ կդառնամ...

Ասաց, որ մեծ եղբայրը պոլիտեխնիկական ինստիտուտում է սովորում։

Ինքը տանը մի քանի «Կոնստրուկտոր»-ի հավաքածուներ ունի և օրվա մեծ մասը դրանցով զանազան «շինություններ» կառուցելով է զբաղված։

— Միևնույն է,— ասացի,— առանց միջնակարգ կրթության քեզ ո՛չ ոք ինստիտուտ չի ընդունի։

— Իսկ ես դպրոցը չեմ սիրում,— նորից կրկնեց նա։

Երկար զրույցից հետո պարզվեց, որ դպրոցը չսիրելն ու վատ սովորելը ընկեր չունենալու պատճառով է։

— Դասարանում ինձ ոչ ոք չի սիրում,— ասաց մի տեսակ խեղճացած,— երբ ներս եմ մտնում, բոլորը լռում են, դասամիջոցին ինձ հետ չեն ուզում խաղալ։

Հետո ես առանձին-առանձին զրուցեցի դասարանի աշակերտների հետ։ Բոլորն էլ նույնն էին ասում.

— Ինքը չի ուզում մեզ հետ խաղալ։ Հետո՝ մեծամիտ է, ուզում է կոնստրուկտոր դառնալ և հարյուր հարկանի շենքեր կառուցել։

Ես եղա Հակոբիկենց տանը։ Պարզվեց, որ նա բակում էլ ընկերներ չունի։

— Ճիշտ է, այնքան էլ լավ չի սովորում, բայց տեսնեք ի՜նչ հրաշալի շինություններ է կառուցում,— ասաց մայրը։— Տեսնողը զարմանում է, բոլորն ասում են, որ տաղանդավոր երեխա է...

Չափազանցված ու անհարկի գովեստներն են, հավանաբար, Հակոբիկի մեջ մեծամտություն առաջացրել։ Այդ զգացել են ինչպես դպրոցում, այնպես էլ բակում։ Ընկերներին վերևից է նայել։ Նրանք էլ ստիճանաբար խույս են տվել իրենից և սկսվել է խորթացումը։

Հետո արդեն, երբ երեխաները դասամիջոցներին հավաքվել են իրար գլխի, խոսել, ծիծաղել, Հակոբիկին մասնակից չեն արել, ու նրան երբեմն թվացել է, թե իր վրա են ծիծաղում։ Կասկածով է վերաբերվել նրանց ծածուկ ասված խոսքին ու ժպիտներին, իրեն սկսել է զգալ հալածվողի դերում, որը ի վերջո նրան ստիպել է դառնալ ինքնամփոփ։

Ընկերների նկատմամբ ունեցած անվստահությունն ու խորթացումը նրան խորթացրել են նաև դպրոցին ու դասերին, և շարվել են «երկուսները»։

Հակոբիկին բացատրեցի, որ մետաղե մասերը նախապես տրված հրահանգով իրար կցելը դեռևս կոնստրուկտոր լինել չէ։ Դրա համար հարկավոր է դեռ շատ սովորել ու լավ սովորել։ Եվ հետո, ասացի, իզուր ես կարծում, թե այդ միայն դու կարող ես անել։ Համոզված եղիր, որ ձեր դասարանի բոլոր երեխաներն էլ նույնը կանեն, այնպես որ կարիք չկա նրանց վերևից նայել։ Ընդհակառակը, դասերից հետո նրանց կարող ես ձեր տուն հրավիրել, միասին այս կամ այն մոդելը կառուցելու։

Հետո զրուցեցի դասարանի երեխաների հետ, բացատրեցի, որ եթե Հակոբիկը որոշել է կոնստրուկտոր դառնալ, այդտեղ վատ բան չկա և դա մեծամտության նշան չէ, դա նրա նախասիրությունն է, մի բան, որ բոլոր երեխաներն էլ պետք է ունենան, հետագայում իրենց ճիշտ տեղը կյանքում գտնելու համար։ Ի վերջո ասացի, որ Հակոբիկը իրենց ընկերն է, և եթե «երկուսներ» է ստանում, հարկավոր է նրան օգնել, որպեսզի նա ետ չմնա։

Կարծում եմ, որ մեր զրույցը Հակոբիկի և նրա ընկերների հետ, ցանկացած արդյունքը կտա, նրանք այսուհետև ճիշտ կհասկանան իրար, կհալվի նրանց միջև առաջացած սառույցը, նրանք կսիրեն Հակոբիկին, Հակոբիկը կսիրի և՛ նրանց, և՛ իր դպրոցը, հետևանքը կլինի այն, որ Հակոբիկը նորից կդառնա դասարանի լավ աշակերտներից մեկը։

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԼԵՆԻՆԻ ԱՆՈՒՆԸ ԿՐՈՂ ՔԱՂԱՔՈՒՄ

### Ա. ԴՐՈՒԺԻՆԱՆ ԱՆՎԱՆԱԿՈՉՎԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔ ՍՏԱՑԱՎ

Լենինականի Րաֆֆու անվան № 32 դպրոցի պիոներական ջոկատը ավագ ջոկատավար Մառլեն Պետրոսյանի ղեկավարությամբ հետաքրքիր նախաձեռնությունների ու միջոցառումների ծրագրեր կազմեց և սկսեց իրականացնել:

Երբ արդեն բավականին գործեր էին կատարել, դրուժինան իրավունք ստացավ կոչվելու Հայրենական պատերազմում զոհված մարտիկներից մեկի՝ Սիմոն Մարդոյանի անվամբ:

Խիզախ մարտիկի մասին շատ քիչ տեղեկություններ ունեին պիոներները:

1964 թվականին Վոլինսկ քաղաքում հողային աշխատանքների ժամանակ մի զինվոր գտնում է № 3321 Կարմիր աստղի շքանշանը: ՍՍՀՄ Զինված ուժերի արխիվում պարզում է, որ այն շնորհվել է մայոր Սիմոն Մարդոյանին: Նույն շրջանում գտնըվել էր նաև նրա կուսակցական տոմսը:

Իհարկե, պիոներները այսքանով բավարարվել չէին կարող, և սկսեցին ուսումնասիրել հերոսի անցած մարտական ուղին: Պատանի հետախույզների ջոկատը այցելեց Ս. Մարդոյանի ընտանիքին: Անհրաժեշտ փաստերի ու տեղեկությունների հետ նրանք դպրոց բերեցին նվեր ըստացած գրքերն ու հերոսի ձեռքով կազմված լուսանկարների ալբոմը: Զինվորական լուսանկարներն ու մակագրությունները օգնեցին պիոներներին նամակագրական կապ հաստատել Ս. Մարդոյանի մարտական ընկերների հետ:

Պատանի հետախույզների ըստացած նամակները, փաստագրական նյութերն ու տեղեկությունները օր-օրի ավելանում էին, և նրանք հարմար գտան հավաքած նյութերով փառքի սրահ բացել: Սրահի բացմանը շատ հյուրեր էին հրավիրել: Հյուրերի թվում էր պահեստի գեներալ Ասքանազ Կարապետյանը, որի հետ ծառայել էր հերոսը: Նա բազմաթիվ հետաքրքիր դեպքեր պատմեց Մարդոյանի մարտական կյանքից: Բոլոր հուշերը, տպավորություններն ու հավաքած նյութերը ուսումնասիրելով, պիոներները ահա թե ինչ պարզեցին:

Վոլինսկ քաղաքում գունդը շրջապատման մեջ է ընկնում: Մայոր Սիմոն Մարդոյանը, որ գնդի քաղղեկն էր, կազմակերպում և գունդը դուրս է բերում շրջապատումից: Իսկ ինքը ծանր վիրավորվում է և գերի ընկնում: Գերմանացիները նրան սոսկալի տանջելուց հետո նետում են համակենտրոնացման ճամբար: Մըխիթար Բարսեղյանը այդ ժամանակ ճամբարում է լինում, երբ ներս են բերում Սիմոն Մարդոյանին: «Մենք պառկած էինք գետնատարած, կիպ կողք-կողքի և փոս ընկած ակնախորշերից նայում էինք գաղջ պատերին ու առաստաղին: Օր ու գիշեր ողջ սենյակով մեկ տարածված էր հիվանդ գերիների տնքոցը...» Այնուհետև Բարսեղյանը գրում է, թե ինչպես Մարդոյանը, չնայած ինքն էլ օգնության կարիք էր զգում, տեսնելով մյուսների տառապանքները, խնամում ու ոգևորում էր նրանց: Նաև փախուստի պլան է մշակում նա: Պլանը իրագործելիս խիզախ հրամանատարը ընկնում է թշնամու գնդակից:

— Այժմ պիոներ ընդունվող յուրաքանչյուր աշակերտ, նախ Մարդոյանի մասին է պատմում, հետո պատասխանում տրվող մյուս հարցերին,— ասում է ավագ ջոկատավար Մառլեն Պետրոսյանը:

### «ՀԱՎԱԳՈՒՅՆ ԳՈՐԾԵՐԻ ՏԱՍՆՕՐՅԱԿ»

Նույն՝ Րաֆֆու անվան դըպրոցի աշակերտները այսպես էին անվանել իրենց ստեղծած գեղարվեստական գործերի ցուցահանդեսը: Բայց ցուցահանդեսը տասն օրից ավելի մնաց, որովհետև դպրոցի աշակերտներից, ուսուցիչներից և ծնողներից բացի, ցուցանմուշները դիտելու էին գալիս թաղամասի բնակիչներն ու այլ դպրոցների աշակերտներ:

Ի՞նչ էին ցուցադրել նրանք:

Գեղարվեստական նկարներ ու լուսանկարներ, խորաքանդակներ ու զարդաքանդակներ, հրաշալի ասեղնագործություններ, հեքիաթների ու գեղարվեստական այլ գործերի նկարազարդումներ, նույնիսկ ընկույզից, նուշից, ծղոտից ստեղծած կերպարներ ու տեսարաններ:

Պատանի ստեղծագործողները լսեցին խրախուսանքի և օգտակար դիտողություններ պարունակող շատ խոսքեր:

### Բ. ԱՅՍՊԵՍ ՊԵՏՔ Է ԲԱՐԵԿԱՄԱՆԱԼ

Լենինականի № 13 դպրոցի պիոներների «Միշտ պատրաստ» երթի բոլոր երթուղիների գծով տարած աշխատանքների մասին կարելի է տեղեկանալ նրանց պատի թերթերից, պաստառներից, տասնյակ ալբոմներում ու թղթապանակներում զետեղված նյութերից: Առաջին անգամ պիոներսենյակ մտնողի վրա մեծ տպավորություն թողնողը «Բարեկամություն» երթուղու մասին

պատմող անկյունն է: Այն երիզված է վառվող ու հանգչող փոքրիկ լապտերիկներով: Վերևում Եվրոպայի աշխարհագրական քարտեզն է, որի տարբեր տեղերում նորից լապտերիկներ են վառվում, պիոներներին անընդհատ հիշեցնելով հեռավոր այդ քաղաքների իրենց բարեկամների մասին: Իսկ ներքևի մեծ պատվանդանի վրա հիշյալ բարեկամությանը վերաբերվող նյութերն են զետեղված:

## «ՀԱՍԱԿԱԿԻՑՆԵՐ» ԱԿՈՒՄԲԸ

«Հասակակիցներ» ակումբի նախագահն է շախմատի գծով քաղաքի դպրոցականների չեմպիոն Զվարթ Մարկոսյանը:

Ակումբի հիսուն անդամները վկայականներ ունեն, որտեղ նշվում են նրանց կատարած աշխատանքները, և դպրոցն ավարտելուց հետո այն տրվում է որպես բնութագիր:

«Հասակակիցներ» ակումբի անդամներից մեկը առաջարկեց կապ պահպանել սփյուռքահայ երեխաների, մյուսը՝ սոցիալիստական երկրների, մեկ ուրիշը՝ կապիտալիստական երկրների երեխաների հետ: Ամիսներ անց ստեղծված կապերը բարեկամության վերածվեցին: Բեյրութի հայկական կոլեջի սաներից իմացան նրանց ուսման, դասավանդվող առարկաների և դպրոցական առօրյայի մասին և հետո գրքերով ծանրոցներ ուղարկեցին նրանց, հուշանվերներ ու բացիկներ փոխանակեցին: Նույնը արեցին Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Կիպրոսի, Լեհաստանի, Ճապոնիայի, Պակիստանի և այլ երկրների երեխաների հետ: Իսկ Փարիզի № 178 դպրոցի երեխաները «Հասակակիցներ» բարեկամության ակումբի անդամներին ձայնագրված ժապավեն ուղարկեցին: Երեխաները լսեցին իրենց հեռավոր բարեկամների ձայնը, ափսոս, որ չէին հասկանում: Բայց հանկարծ մեկը սկսեց հայերեն խոսել և ասաց, որ ինքը հայ է, սովորում է ֆրանսիական դպրոցում: Հետո պատմեց ֆրանսահայերի, Փարիզի ու իրենց դպրոցի մասին:

Անակնկալը մեծ տպավորություն թողեց երեխաների վրա և այդ տպավորության տակ նրանք մի ջերմ նամակ գրեցին ֆրանսիացի բարեկամներին: Իսկ ժապավենը այժմ բարեկամության անկյան ցուցանմուշներից մեկն է հանդիսանում:

Հեռավոր ընկերներից, մեր եղբայրական մյուս հանրապետություններից ստացած հին ու նոր դրամանիշերից ուշագրավ հավաքածու են կազմել աշակերտները և տեղադրել պատվանդանի վերևում:

## ԺԱՆԱՊԱՐՀՈՐԴ ՎԶԿԱՊԸ

Երբ մեկնարկ վերցրեց համամիութենական «Միշտ պատրաստ» երթը, 18-րդ դպրոցի պիոներները երկար ժամանակ մտածում էին, թե ինչով խորհրդանշեն Սովետական Միության բոլոր հանրապետությունների դպրոցականների բարեկամությունը: Եվ ահա գտան. նրանք կարմիր վզկապի ձախ անկյունում իբրև նշանաբան գրեցին. «Համերաշխության և բարեկամության պայքարի գործին եղի՛ր պատրաստ»: Հաջորդ օրը վզկապն այդ մակագրությամբ ուղևորվեց մերձբալթյան հանրապետությունները: Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի պիոներները վզկապի վրա իրենց լեզուներով նշանաբանին պատասխանեցին՝ «Միշտ պատրաստ»:

«Շրջիկ բարեկամական վզկապը» յուրաքանչյուր ճամփորդությունից հետո դպրոց է վերադառնում և գրավում իր տեղը շքեղ ձևավորված բարեկամության անկյան կենտրոնում, որ մի փոքր հանգստանա ու նորից շարունակի ուղևորությունը: Նրա վրա դեռ միայն ութ հանրապետությունների ձեռագրեր կան, իսկ պետք է որ լինեն բոլորը՝ տասնհինգը:

## ԵՎՍ ՄԵԿ ԱՆՈՒՆ

Նույն 18-րդ դպրոցի «Հասակակիցներ» բարեկամության ակումբի անդամ Կարինե Ներսիսյանը ակումբի մյուս անդամների նման նամակագրական կապեր էր հաստատել տարբեր քաղաքների դպրոցականների հետ: Մի օր Օրյոլ քաղաքից նրա ընկերուհին գրեց, որ իրենց ջոկատը Հայրենական պատերազմում զոհվածների հուշարձաններն ու գերեզմաններն է խնամում և որ իրենց քաղաքի ազատագրման համար զոհվել է նաև լենինականցի Գևորգ Մկրտչյանը:

Կարինեն այդ մասին հայտնեց ավագ ջոկատավարին, և միասին գտան զոհված մարտիկի հարազատներին: Պարզվեց, որ նրանք չգիտեին, թե ինչ հանգամանքներում է զոհվել Գևորգը: Ծնողները այցելեցին իրենց որդու գերեզմանին: Ահա այսպես, Կարինեի հաստատած բարեկամության շնորհիվ, Հայրենական պատերազմում զոհված ևս մի զինվոր հայտնի դարձավ:

## ՆՐԱՆՑ ԼԱՎ ԵՆ ԺԱՆԱՉՈՒՄ ՀԱՑԻԿ ԳՅՈՒՂՈՒՄ

Բերքահավաքի եռուն օրեր էին Ախուրյանի շրջանի Հացիկ գյուղում: Մեկ անգամ չէ, որ Լենինականի 18-րդ դպրոցի աշակերտները օգնել էին նրանց և ահա դրուժինան նորից իր ամենամարտական ջոկատներով օգնության հասավ հացիկցիներին:

Մի քանի օր շարունակ դպրոցականները աշխատեցին կոլտնտեսության դաշտերում, ճակընդեղ հավաքեցին, իսկ բերքահավաքն ավարտելուց հետո



# ՊԱՊ-Ը ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԻՄՔՆ Է

Մեր պետության ականավոր գործիչ Միխայիլ Իվանովիչ Կալինինը մոսկովյան դպրոցականների հետ հանդիպման ժամանակ ասել է, որ մեր հայրենիքի արժանավոր քաղաքացիներ լինելու համար՝ հարկավոր է լավ սովորել երեք առարկա՝ մայրենի լեզուն, թվաբանությունը և ֆիզկուլտուրան:

Ֆիզիկական կատարելիության միջոցներից մեկը «Պատրաստ աշխատանքի և ՍՍՀՄ պաշտպանության» նոր համալիրն է, որը ներդրվեց 1972 թ. մարտի 1-ից:

Համալիրի անվանումն արդեն ասում է այն մասին, որ այնտեղ ընդգրկված մարզաձևերն ու վարժությունները նպաստում են աշխատանքի, հետևաբար և ուսման առաջադիմությանը, տալիս են այնպիսի կարողություններ ու գիտելիքներ, որոնք անհրաժեշտ են հայրենիքի պաշտպանության համար: Ահա թե ինչու «Պատրաստ աշխատանքի և ՍՍՀՄ պաշտպանության» (ՊԱՊ) համալիրը համարվում է ֆիզիկական կուլտուրայի սովետական սիստեմի հիմքը:

Նոր համալիրը, ելնելով տարիքային սկզբունքներից, ունի հինգ աստիճան:

ԱՌԱՋԻՆ ԱՍՏԻՃԱՆԸ, որ նախատեսված է 10—11 տարեկան տղաների և 12—13 տարեկան աղջիկների համար, կրում է «Համարձակներ և ճարպիկներ» անունը: Դրանով նպատակ է դրված երեխաների մեջ դաստիարակել գիտակցական վերաբերմունք ֆիզկուլտուրայի պարապմունքների նկատմամբ, զարգացնել կենսական անհրաժեշտություն ունեցող ֆիզիկական կարողություններն ու ընդունակությունները, արթնացնել հետաքրքրություն դեպի մարզանքը:

ԵՐԿՐՈՐԴ ԱՍՏԻՃԱՆԸ, որ կոչվում է «Մարզական հերթափոխ», նախատեսված է 14—15 տարեկանների համար:

Դրա նպատակն է այդ տարիքի դեռահասների ֆիզիկական պատրաստվածության հետագա զարգացումը և կիրառական վարժությունների տիրապետումը:

ԵՐՐՈՐԴ ԱՍՏԻՃԱՆԸ՝ «Ուժ և արիություն»—16-18 տարեկան տղաների և աղջիկների համար է: Դրանով նպատակ է դրված կատարելագործել երիտասարդների ֆիզիկական պատրաստականությունը՝ հետագա աշխատանքային գործունեության և ՍՍՀՄ զինված ուժերում ծառայելու համար:

Հաջորդ երկու աստիճանները ավելի բարձր տարիքի մարդկանց համար են:

Համալիրի յուրաքանչյուր աստիճանը բաղկացած է երկու մասից: Առաջինը կոչվում է պահանջների բաժին, համաձայն որի յուրաքանչյուրը պետք է իմանա ֆիզիկական դաստիարակության հիմունքները, գործնականորեն տիրապետի անձնական և հասարակական հիգիենայի կանոններին, գիտենա մասսայական ոչնչացման զենքերից պաշտպանվելու կանոններն ու հնարքները, կարողանա բացատրել առավոտյան լիցքա-մարզանքի նշանակությունը և կատարի վարժությունների համալիր: Երկրորդ բաժինն ունի վարժությունների և նորմաների կատարման գործնական պահանջներ:

Դպրոցականներին վերաբերող բոլոր երեք աս-

---

Է գյուղում կառուցվող դպրոցի շինարարներին օգնեցին:

Դպրոցը շահագործման հանձնվելուց հետո, աշակերտները այցելեցին իրենց ընկերներին, և հավաքած մետաղի ջարդոնի, թղթի մակուլատուրայի դիմաց ստացած դրամով լաբորատոր սարքեր, գրենական պիտույքներ, որքեր նվիրեցին նրանց:

### Գ. «ՈՒԺԵՂՆԵՐ, ՃԱՐՊԻԿՆԵՐ, ՀԱՄԱՐՁԱԿՆԵՐ»

Այս երթուղու գծով շատ բան են արել Լենինականի դպրոցները: Ձմռան ընթացքում այդ ավելի լավ արտահայտվեց տարբեր մարզասրահների մրցումներում: Ուշագրավ էին մանավանդ տափօղակով հոկեյի, չմշկասահքի և ձնավոր չմշկասահքի մրցումները:

ՀԼԿԵՄ Լենինականի և ֆիզկուլտուրայի և սպորտի քաղաքային կոմիտեները 14—17 տարեկան մոտ 200 դպրոցականների շրջանում անցկացրին «Ոսկե տափօղակի» համար մրցումներ: Դա հնարավոր դարձավ, որովհետև գրեթե բոլոր բակերում ու դպրոցների շրջակայքում տնային կառավարչությունների օգնությամբ դպրոցականները սահադաշտեր էին պատրաստել և մարզվել:

Մրցումների օրերը իսկական մարզատոն էր ոչ միայն դպրոցականների, այլև մեծահասակների համար: Յուրաքանչյուր թաղամասի բնակիչ իր պարտքն էր համարել գալ և ոգևորել իր բակի թիմի մրցելույթը: Մի քանի օր տևած համառ պայքարից հետո «Ոսկե տափօղակ» մրցանակը շահեց «Մետրոպոլ» թիմը, իսկ երկրորդ, երրորդ, չորրորդ տեղերը համապատասխանաբար գրավեցին «Արարատ», «Լոկոմոտիվ», «Կույբիշև» թիմերը:

«Մետրոպոլ» թիմի բոլոր անդամները և մյուս թիմերի աչքի ընկնող խաղացողները պարգևներ ստացան:

* * *

«Միշտ պատրաստ» երթի բոլոր երթուղիների գծով հետաքրքիր աշխատանքներ կազմակերպելու համար քիչ ջանքեր չեն թափել նաև քաղաքի մյուս դպրոցների դրուժինաներն ու ջոկատները:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

տիճանների վարժությունները գնահատվում են ոսկե կամ արծաթե կրծքանշաններով: Այն դպրոցականը, որը ուսումնամարզական ամենօրյա պարապմունքների շնորհիվ կարողանա հասնել բարձր ցուցանիշների, պարզ է, նրա համար անհասանելի չի լինի ոսկե կրծքանշանը:

Երևանում, Լենինականում, Կիրովականում, Հոկտեմբերյանում և այլ քաղաքներում ու գյուղերում քիչ չեն այն դպրոցները, որոնց հարյուրավոր աշակերտներ արդեն կրում են ոսկե և արծաթե կրծքանշաններ:

Համալիրը, սակայն, սոսկ կրծքանշան ստանալու համար չէ, հետևաբար մինչև կրծքանշանի համար պայքարելը հարկավոր է անցկացնել ամենօրյա մարզումներ ու պարապմունքներ, օրգանիզմը կոփել-պատրաստել մրցումներին: Սխալ է, երբ կրծքանշան ստանալուց հետո դադարում են ֆիզկուլտուրայով զբաղվել: Ճիշտ չեն վարվում այն դպրոցները, որոնք համալիրի դահուկային և լողի մարզաձևերի ուսուցումը չեն կատարում զանազան պատճառներով: Վեդի ավանի № 1 միջնակարգ դպրոցի աշակերտները ու մանկավարժները բոլորովին այլ կերպ մտածեցին: Միացյալ ուժերով նրանք կառուցեցին հիանալի լողավազան: Ավելին, չնայած շրջանի մեղմ ձմռանը, նրանք ձեռք բերեցին նաև դահուկներ և շաբաթ ու կիրակի օրերը մարզումների դուրս եկան մի քանի

# Խելոքի վախճանը

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Վայրի շերամի թրթուրները այնպիսի մի ընդարձակ բույն էին կառուցել իմ տան դիմացի խնձորենու վրա, որ նրա մեջ ազատ կերպով տեղավորվում էր հարյուր հիսունվեց շընչից բաղկացած նրանց ընտանիքը:

Վաղուց չէր, որ թրթուրները դուրս էին եկել ձվերից: Ձմեռն իր սաստիկ սառնամանիքներով անցել էր ձվերի վրայով, գարնանը կարկուտն էր հարվածել, ոստը կիսով չափ ջարդել, բայց ձվերի մեջ ապահով քնած էին ապագա թիթեռնիկները, որովհետև նրանց հոգատար մայրը այնպիսի նյութերով էր փաթաթել նրանց, որ դիմանում էին բնության ուղարկած բոլոր դաժանություններին:

Հիմա, գարնան այս արևոտ օրը, թրթուրների բազմամարդ ընտանիքը մետաքսե թելերից գործել է հսկայական տնամրոցը և հոգնած ու դադրած ննջում է արևի տակ. մթնելուն են սպասում, որ դուրս գան, շուլալվեն մատղաշ ընձյուղներին և ուտեն նրանց նոր բացված տերևները:

— Բա մենք անխելք չե՞նք,— գանգատվում էր նրանցից մեկը:— Բա էս պայծառ օրը տանը փակվա՞ծ կմնան: Բա էն մութ ու մռայլ գիշերո՞վ կգնան բան ուտելու: Բա...

— Լսի՛ր, Խելո՛ք, պոչդ նոր է ձվից դուրս եկել, մեծ-մեծ դատողություններ ես անում,— սաստեց նրա բազմաթիվ եղբայրներից մեկը:— Եթե օրենք է, որ ցերեկը պիտի տանը նստել՝ ուրեմն այդպես էլ պետք է: Եթե գիշերն ենք կերակրվելու, ուրեմն...

— Ուրեմն, ուրեմն... դու խելքի սեփական խելք չունես: Անում ես այն, ինչ բոլորն են անում:

— Եթե բոլորն են անում, ուրեմն այդպես էլ հարկավոր է,— իր բնազդին հլու՝ կրկնում էր համառ եղբայրիկը:

Այդ վեճին մասնակցեց համարյա ամբողջ ընտանիքը և բոլորն էլ մեզ ծանոթ Խելոքին անխելք դուրս բերին: Բայց որովհետև բոլորն էլ ծնվել էին մեկ օրում, ոչ մեկը մյուսից ավելի կյանքի փորձ չուներ, ուստի ոչ ոք չկարողացավ բացատրել, թե ինչու այս պայծառ-լուսավոր օրը կերակրվելու փոխարեն, պիտի սպասեն մութ ու մռայլ գիշերին ու խարխափելով փնտրեն իրենց ուտելիքը: Մայր էլ չունեին, որ բացատրեր: Նրանց մայրը նույնիսկ չէր էլ տեսել իր զավակներին: Դեռևս անցյալ աշնանը ձըվերը ածել-ամրացրել էր խնձորենու ոստին և ինքը մահացել: Ճիշտ է, թրթուրները մայր չէին տեսել, բայց մի ներքին ձայն նրանց շարունակ զգուշացնում էր. «Սպա՛ս, ցերեկով դուրս չըգա՛ք տնից...» Իրենց մահացած մոր ձա՞յնն էր, թե՞ հին ժամանակներից եկող ինչ-որ բան, որին մարդիկ «բնազդ» անունն են տվել:

Մի խոսքով, հիմար վիճակ էր, դե արի սովից զկռտալով սպասիր, թե երբ պիտի վերջանա այս անվերջանալի օրը:

Վերջապես մթնեց: Խելոքն էլ դուրս եկավ մետաքսե տնից բոլորի հետ և մրթմրթալով, դժգոհելով, սկսեց ուտելիք փնտրել: Քամին ոստը տանում բերում էր և ցուրտը կտրում անցնում էր Խելոքի կակուղ մարմինը:

«Բոլորն էլ ինձ մեղավոր համարեցին: Իսկ չի՞ կարող, որ բոլորն էլ հիմար լինեն... Ուղղակի հիմարաբար հետևում են հնից եկած սովորությանը...» — ինքն իրեն դատողություններ էր անում Խելոքը:

Կերավ անտրամադիր, մռայլ մտքերով տարված, և լուսաբացին բոլորի հետ սողաց դեպի տուն:

Այնպես պայծառ էր շողում ա-

կիլոմետր հեռավորությամբ գտնվող ձյունաշատ լանջերին:

ՊԱՊ համալիրում զգալի տեղ է հատկացված չըմուշկային մարզաձևին: Հայաստանի մի շարք քաղաքներում և շրջաններում կարելի է դպրոցական խաղահրապարակները սառցապատել: Դա մեծ դըժվարություն չի ներկայացնում:

Շատ դպրոցականներ, սիրելով և մասնագիտանալով այս կամ այն մարզաձևում, կարծում են, թե առանց ՊԱՊ-ի էլ նրանք կարող են հասնել բարձր ցուցանիշների: Սխալ է: ՊԱՊ-ը հենց ընդհանուր ֆիզիկական պատրաստականության հիմքն է: Աշխարհի քառակի չեմպիոն, հնգամարտիկ Իգոր Նովիկովը ասում է, որ նա իր նվաճումների համար պարտական է ՊԱՊ համալիրին: Եվ իրոք, արդյո՞ք, Իգորը կկարողանար հասնել այդ բարձունքին, եթե մինչ այդ չնըվաճեր ՊԱՊ համալիրի գծով ՍՍՀՄ չեմպիոնի կոչումը: Եվ ոչ միայն Նովիկովը, աշխարհին ծանոթ այնպիսի մարզիկներ, ինչպիսիք են Հրանտ Շահինյանը, Ալբերտ Ազարյանը, Վլադիմիր Ենգիբարյանը և ուրիշներ, մարզական վարպետության գագաթներին են հասել ընդհանուր ֆիզիկական պատրաստականության ճանապարհով: Մեծ կոմպոզիտոր Արամ Խաչատըրյանի վկայությամբ, աշխարհահռչակ ջութակահար Դավիթ Օյստրախը հավանաբար չհասներ այդ բարձունքին, եթե չսիրեր ու չզբաղվեր ֆիզիկական կուլտուրայով:

*Ս. ՀԱԿՈԲՅԱՆ*

---

րևն այդ օրը; գիշերվա ցրտից ու խավարից հետո այնպես դուրեկան էր մեկնվել նրա ջերմ ճառագայթների տակ, որ Խեկոքը չդիմացավ ներսի նեղվածքին, հանեց տան շեմքը, դուրս նայեց ու երանությամբ բացականչեց.

— Մի դո՛ւրս եկեք, մի տեսե՛ք, թե ինչքա՛ն սիրուն է աշխարհը...

Եվ իսկապես, վիթխարի խնձորենու կատարից մի անհման տեսարան էր բացվում. ամբողջ Լուսավերտ ավանը թաղված էր կանաչ պարտեզների մեջ: Ծառերը ներմակ էին հագել բյուրավոր ծաղիկներից և օդը լցրել իրենց անմահական բուրմունքով:

Իսկ տերևները... Ինչքա՛ն ուտելու բան կար աշխարհում: Իսկ այս հիմարները սպասում են մեկին, որ բոլորը միասին, իրար հրմշտելով՝ անասունների նման արածեն ընդամենը մի ողորմելի ճյուղի վրա... Էս լեն ու բոլ աշխարհը թողած... թո՛ւհ...

— Դո՛ւրս եկեք, անխելքնե՛ր, դո՛ւրս եկեք ցրվենք այս դրախտի մեջ, ի՞նչ եք իրար գլխի թափված մրափում...

Նրան ոչ ոք չարձագանքեց: Միայն իր այն եղբայրը, որի անունը ծաղրանքով «Ուրեմն» էր դրել, նորից մեջտեղ բերեց իր սովորական «ուրեմնը».

— Եթե մենք զգում ենք, որ ցերեկով չի կարելի տնից դուրս գալ, ուրեմն այդտեղ մի բան կա, որ այդպես ենք զգում...

— Զգո՛ւմ ենք, զգո՛ւմ ենք,— զայրացավ Խեկոքը:— Ես էլ եմ զգում, բայց սեփական խելք պիտի ունենա՞ն, թե՞ ոչ... Դեհ, դուք գիտեք, ես գնացի լույս աշխարհ...

Ու Խեկոքը, որը նաև անվախ էր, դուրս սողաց թրթուրների իրենց ամրոցից, տնկվեց տերևի կոթունին, ձգվեց իր երկար մարմնով մեկ ու տարվեց, հիացավ շրջակա աշխարհով:

— Դու մեզնից մի՛ հեռանա, փորձանք կգա գլխիդ,— այնուամենայնիվ զգուշացրեց եղբայրիկ Ուրեմնը:

Եթե նա մարդու նման խելք ունենար, կզգուշացներ Խեկոքին, թե՝ «Հոտից հեռացող գառը գայլի բաժին կդառնա»: Մարդկանց այդ իմաստուն խոսքը չգիտեր, ուստի և չասաց, բայց դրա նման մի բան ինքն էլ զգում էր իր էությամբ, զգում էր, որ համայնքից անջատվող-հեռացողը գնում է դեպի կործանում, ուստի տագնապով գոռաց եղբոր հետևից.

— Ե՛տ արի, քեզ ասում ենք, շո՛ւտ ետ արի...

Խեկոքը քմծիծաղ տվեց՝ «վախկոտներ...» և սողալով դանդաղ հեռացավ համայնքի կացարանից:

Տան քիվին կանգնած մայր ծիտիկն էլ հենց դրան էր սպասում: Ամրոցի մեջ խլվլացող թրթուրների վրա հարձակվել չէր համարձակվում. փորձից գիտեր, որ նրանց մետաքսաթելերը սարդոստայնի նման կպչում ու խըճճում էին իրենց զոհին: Համբերեց, մինչև որ թրթուրը հեռացավ այդ թակարդից: Այն ժամանակ նա ամբողջ թափով հարձակվեց, կտուցին առավ Խեկոքին և սուրաց դեպի իր բույնը, ուր ձագուկները կերի էին սպասում անհամբեր:

— Տարա՜վ,— ճչում էր Խեկոքը:

Իսկ իր եղբայրիկներն այդ աղետից սարսափահար, հապճեպ ծածկեցին իրենց ամրոցի բաց դարպասը, իրար գլխի կուտակվեցին և ահից կուչ եկան:

Այնուհետև էլ ո՞ւմ մտքով կանցներ ցերեկով տնից դուրս գալ: Չէ՞ որ թռչունները ցերեկով են որս անում:

*Նկ. ՆԱԶԵԼԻ ՆԻԿՈՂՈՍՅԱՆԻ*






# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՊՏՈՒՂՆԵՐ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Մի անգամ ճանապարհորդելով Արևմտյան Աֆրիկայի արևադարձային անտառներով, բուսաբան Ֆերչայլդը մի նոր բույս հայտնաբերեց: Դա փոքր ծառ էր, 4—5 մետր բարձրությամբ, որի սաղարթը ծածկված էր սալորի մեծության պղտոր-կարմրավուն բազմաթիվ պտուղներով: Փորձելով և համոզվելով, որ այդ պտուղները ուտվում են, ընդ որում նույնիսկ բավականին համեղ են, Ֆերչայլդը դրանցից կերավ մի տասնյակի չափ:

Մի քանի րոպե հետո Ֆերչայլդին գարեջուր մատուցեցին: Նա զարմանքով նկատեց, որ դա մեղրի պես քաղցր է: Այնուհետև ինչ էլ որ նա ցանկանում էր ուտել, արտակարգ քաղցր էր թվում: Նույնիսկ թթու լիմոնը, որը սովորական պայմաններում հնարավոր չէ ուտել, ավելի քաղցր էր, քան մեղրը: Պարզվեց, որ այս կախարդական պտուղը բթացնում է համի զգացողությունը, այնպես որ դրանից հետո այն ամենը, ինչ մարդ ճաշակում է, թվում է միայն քաղցր: «Կախարդական պտղի» առաջացրած քաղցրի զգացումը, պնդում են քիմիկոսները, ավելի հաճելի է, քան մեզ հայտնի բնական կամ արհեստական բոլոր այլ քաղցրավենիքներինը: Այդ տարօրինակ ազդեցությունը պահպանվում է մեկ, երբեմն՝ մի քանի ժամ, կախված այն բանից, թե դուք քանի պտուղ եք ճաշակել:

Դա **սինզեպալում դուլցիֆիկում** բույսի պտուղն է:

Տեղացիները սինզեպալումի պտուղներն օգտագործում են արմավենու գինի խմելուց առաջ: Դրա շնորհիվ այդ գինին, որը արտակարգ թթու է և տհաճ, դառնում է քաղցր ու հաճելի:

Ինդոնեզիայում է աճում կապպել կոչվող ծառը, որը գիտական գրականության մեջ հայտնի է **ստելեխոկարպուս բուրակոլ** անունով: Դրա հյութալի խոշոր, բուրումնավետ պտուղները կաուլիֆլորայի երևույթի շնորհիվ (երբ ծաղիկները բացվում են ծառի բնի կամ բազմամյա ճյուղերի վրա), ողկույզներով կախված են բնից և ճյուղերից: Տերևները խոշոր են, վարդագույն կամ գինե-կարմիր: Այս բույսի մեկ-երկու պտուղը ճաշակելուց հետո կարելի է նույնիսկ բավականին շատ սխտոր ուտել: Միևնույն է, ոչ ոք տհաճ հոտ չի զգա, դեռ ավելին, դրանից հետո նրա քրտինքն անգամ մանուշակի դուրեկան հոտ կարձակի: Շատ հնում այս ծառը աճեցնում էին Ճավա կղզու պալատական հարեմների բակում, որպեսզի կանանցից անուշահոտություն բուրի: Միևնույն ժամանակ հասարակ մարդկանց հավատացնում էին, որ կապպելի պտուղը ուտելու դեպքում նրանց մեծ դժբախտություն կպատահի:

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԱՐԱԾՎԱԾ ՎԱՅՐԻ ՊՏՈՒՂՆԵՐԸ

### ՏԱՆՁԵՆԻ, ԽՆՁՈՐԵՆԻ, ՍԱԼՈՐԵՆԻ

Հայաստանի անտառները հարուստ են վայրի պտուղներով, որոնք անհիշելի ժամանակներից ի վեր մարդիկ օգտագործում են ինչպես թարմ, այնպես էլ չորացրած վիճակում: Վայրի պտուղները այսօր էլ չեն կորցրել իրենց նշանակությունը: Նրանք պարունակում են մեծ քանակությամբ սննդանյութեր ու վիտամիններ, որի շնորհիվ մեծ արժեք են ներկայացնում ինչպես սննդարդյունաբերության, այնպես էլ բժշկության ու դեկորատիվ պարտեզագործության բնագավառում:


*Սալորենի*

Անշուշտ դուք եղել եք մեր անտառներում: Գարնանը հիացել եք վայրի պտուղների բազմագույն ծաղիկների, ամռան վերջին՝ գեղեցիկ պտուղների, իսկ աշնանը՝ տերևների հրաշալի գունափոխմամբ: Այդ տեսանկյունից հատկապես մեծ հետաքրքրություն են ներկայացնում Հայաստանում տարածված վայրի տանձենին, խնձորենին և սալորենին:


*Տանձենի*

# ՊԱՏՄՎԱԾՔ ԿԱՈՒՉՈՒԿԻ ՄԱՍԻՆ

*ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ*

1493 թվականին Քրիստափոր Կոլումբոսը իր երկրորդ ճանապարհորդությունն էր կատարում դեպի Ամերիկա: Նրա նավը կանգ առավ մի կղզու մոտ, Կոլումբոսն այն անվանեց «Էսպանյոլա», որն այժմ կոչվում է Հայիթի կղզի:

Ափ իջնելով, նավորդները զարմանքով տեսան, որ հնդկացիները զբաղված են ինչ-որ ուրախ խաղով, ինչպիսին, ասենք, մեր բասկետբոլն է: Բնիկները երգի ռիթմով միմյանց էին նետում սև գնդակները, որոնք գետին ընկնելով՝ վերուվար էին թռչկոտում: Նավորդ իսպանացիները ձեռներն առնելով այդ գնդակները, տեսան, որ դրանք բավական ծանր են, կպչուն և ինչպես ապուխտը՝ ծխի հոտ են արձակում: Նրանց քիչ չզարմացրեց նաև հնդկացիների առաջնորդի սպիտակ, անջրանցիկ թիկնոցը:

Ամերիկայի առաջին նվաճողներն իրենց հետ հայրենիք տարան այդ արտասովոր, կպչուն խաղագնդակները և որպես հազվագյուտ ցուցանմուշ՝ պահպանելու համար հանձնեցին թանգարան:

Անցավ համարյա երկու հարյուր տարի: Սերունդներ հաջորդեցին իրար: Այդ ժամանակամիջոցում որքա՜ն մարդիկ են այցելել թանգարան, բայց ոչ մեկը կարծես չէր ուզում նկատել այդ հետաքրքրական խաղագնդակները, որոնք այնպես մեծ հեղաշրջում պիտի մտցնեին մեր կյանքում: Վերջապես գտնվեց մեկը, որ երկար կանգնած դիտում էր հնդկացիներին այնքան զվարճություն պատճառող խաղագնդակները և ցանկացավ հանգամանորեն ծանոթանալ, թե ինչ են ներկայացնում դրանք իրենցից: Դա ֆրանսիացի գիտնական Լա-Կոնդամինն էր, որը Պերու էր ուղարկվել Փարիզի գիտությունների ակադեմիայի կողմից: Եվ ահա, հենց նրա ջանքերով երկրորդ անգամ հայտնագործվեց կաուչուկը:

Գիտական աշխարհին հայտնի դարձավ, որ բնիկներն այդ կպչուն հյութը ստանում են Հևեյա կոչվող ծառից, որն աճում է արևադարձային անտառներում: Ամազոն գետի ափերի մոտ, և հնդկացիներն այդ նյութը անվանում են «կաուչուկ», որը նրանց լեզվում նշանակում է «ծառի արցունք»:

1770 թվականին նշանավոր քիմիկոս Պրիստլին, առաջին անգամ, «գումիելաստիկա» (առաձգական խեժ) անվան տակ, դրանից պատրաստեց ռետին՝ մատիտով գրածը ջնջելու համար: Քսան տարի անց, հաջողվեց կաուչուկից պատրաստել վիրակապ և լըսափող, որոնք ինչպես հայտնի է, գործածվում են բը-

---

Հայաստանում տարածված են տանձենիների մոտ 22, խնձորենու մեկ և սալորենու երեք տեսակ, որոնց զգալի մասը բացի պտուղներից, ունի նաև որակյալ բնափայտ:

Վայրի տանձենին, խնձորենին, սալորենին ունեն դեկորատիվ հրաշալի առանձնահատկություններ, գեղեցիկ ափսեակ ծաղիկներ, բրգաձև կամ լայնատարած պսակ, ամբողջական, բազմերանգ տերևներ: Քանի որ տանձենին ու խնձորենին հնդալոր են, իսկ սալորենին կորիզավոր, ուստի նրանց պտուղների կառուցվածքը, ձևը և գույնը տարբեր են: Տանձենին ունի դեղնավուն և կանաչադեղնավուն, խնձորենին՝ դեղնավուն և դեղնանարնջագույն պտուղներ, իսկ սալորենին՝ դեղին, կարմիր և մանուշակագույն պտուղներ: Այդ պատճառով վերոհիշյալ տեսակներից շատերը հիանալի կերպով օգտագործվում են փողոցների, պուրակների ու զբոսայգիների կանաչապատման համար:

Տանձենու և խնձորենու մի շարք տեսակների կարելի է հանդիպել, օրինակ, Երևան քաղաքի Խանջյան փողոցի վրա:



Խնձորենի

Վայրի տանձենուն, խնձորենուն և սալորենուն կարելի է հանդիպել Հայաստանի գրեթե բոլոր անտառային շրջաններում: Հյուսիսային Հայաստանում, Զանգեզուրում, Սևանի ավազանում և այլուր:

Վայրի պտուղները կուլտուրական սորտերի համեմատությամբ ավելի ցրտադիմացկուն են, հողի և սննդանյութերի նկատմամբ քիչ պահանջկոտ, չորադիմացկուն և երաշտադիմացկուն, քիչ են տուժում հիվանդություններից ու վնասատուներից: Վերոհիշյալ հատկությունները լայն հնարավորություններ են տալիս բնական հարմարվողականությամբ օժտված այս հիանալի տեսակները օգտագործել որպես պատվաստակալ, որի շնորհիվ կարելի է աճեցնել նոր, ավելի արժեքավոր սորտեր:

*ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

## «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹԸ» ԱՎԱՐՏՎԱԾ Է

Խմբագրությունը ամփոփեց «Ուշադիր ընթերցողների մրցույթ-73»-ի արդյունքները: Առավել ճիշտ ու հանգամանորեն բոլոր հարցերին պատասխանել էին «Մրցույթ-72»-ի հաղթող Վահան Ամատունին (Աշտարակի շրջ., գ. Օշական, 10-րդ դասարան) և Ռաֆայել Մարտիրոսյանը (Կիրովական, № 3 դպրոց, 10-րդ դասարան): Խմբագրությունը երկուսին էլ շնորհեց առաջին մրցանակը:

Երկրորդ մրցանակին արժանացավ Նելլի Թումանյանը (Կիրովական, № 5 դպրոց, 9-րդ դասարան):

Երրորդ մրցանակը շնորհվեց Սուրեն Պետրոսյանին (Աբովյանի շրջ., գ. Բալահովիտ, 7-րդ դաս.), Գայանե Զաքարյանին (Արարատի շրջ., գ. Ծիրազլու, 9-րդ դաս.) և Հասմիկ Ամիրխանյանին (Նոյեմբերյանի շրջ. գ. Դովեղ, 7-րդ դաս.):


ՎԱՀԱՆ ԱՄԱՏՈՒՆԻ


ՌԱՖԱՅԵԼ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երկու փուլերի արդյունքով՝ խրախուսական մրցանակների արժանացան Աշոտ Խաչատրյանը (Երևան, № 93 դպրոց, 7-րդ դաս.), Լիլյա Գևորգյանը (Կիրովական, № 5 դպրոց, 9-րդ դաս.), Ռուզաննա Ավետիսյանը (Երևան, № 51 դպրոց, 8-րդ դաս.), Անահիտ Պետրոսյանը (Հոկտեմբերյան, № 4 դպրոց, 8-րդ դաս.) և Լաուրա Ղազարյանը (Սպիտակ, № 3 դպրոց, 9-րդ դաս.):

---

ժըշկության մեջ:

Եվս երեք տարի, և շոտլանդացի Մակինտոշը գըտավ կաուչուկը բենզինի մեջ տարրալուծելու եղանակը, որի շնորհիվ նրան հաջողվեց իր պատրաստած կաուչուկի «շաղախից» կտոր ստանալ: Այդ կտորից կարվեց անձրևից պաշտպանող անջրանցիկ թիկնոց, որը նրա անունով ամենուրեք հենց այդպես էլ կոչվեց՝ մակինտոշ:

1852 թվականին Չարլզ Հուդերը կարողացավ ջերմության միջոցով կաուչուկից ռետին ստանալ: Այս եղանակը կոչվեց վուլկանիզացիա՝ եփում: Սա խոշոր հայտնագործություն էր: Պատրաստվեցին ռետինե առաջին կոշիկներն ու կրկնակոշիկները, որոնք անմիջապես լայն տարածում գտան: Կաուչուկն արագորեն հաստատուն տեղ նվաճեց ժողովրդական տընտեսության նաև մյուս ճյուղերում: Դեռևս 1919 թվականին գյուտարարների կողմից քառասուն հազար առաջարկ էր եղել տարբեր տեսակի իրեր պատրաստելու համար: Այդ դեռ կես դար առաջ էր, իսկ հիմա՞... ո՞վ կարող է հաշվել:

Կապիտալիստական բոլոր երկրների ուշադրության առարկա դարձավ կաուչուկի հանույթի ավելացումը: Բրազիլիական կառավարությունը կախաղանի սպառնալիքով արգելեց երկրից դուրս տանել կաուչուկատու Հևեյա ծառի՝ սերմը կամ տնկիները: Բայց ՛անգլիացիները հափշտակեցին այն և տարածեցին Ցեյլոն, Ճավա, Հավայան և մյուս կղզիներում:

Հևեյայից բացի, կան նաև կաուչուկատու այլ բույսեր, օրինակ՝ ֆիկուսը (Հնդկաստանում), լիանան (Աֆրիկայում) և այլն: Նեգրերին դաժանորեն շահագործելով, Եվրոպայի սպիտակամորթները ամենաէժան գնով նրանցից ձեռք են բերում կաուչուկը:

Երկար ժամանակ գիտնականները կարծում էին, որ կաուչուկ պարունակում են միայն արևադարձային ծառերը: Սովետական գիտնականները, սակայն, սկսեցին համառորեն կաուչուկ որոնել նաև խոտերի մեջ: Մեր երկրի տարբեր վայրերում հետախուզվեցին հարյուր հազար առանձին բույսեր: Այդ որոնումները հաջողությամբ պսակվեցին: Գտնվեցին կաուչուկատու խլածաղիկները, «տաու սագիզ», «կրիմ-սագիզ», «կոկ-սագիզ» բույսերը:

Առանձնապես նշանակալից եղավ անվանի քիմիկոս Սերգեյ Վասիլևիչ Լեբեդևի հայտնագործությունը: Նա գտավ էթիլենային սպիրտից սինթետիկ կաուչուկ ստանալու եղանակը: Այս մեծ գյուտի շնորհիվ մենք այլևս հարկադրված չէինք արտասահմանից կաուչուկ ներմուծելու:

Բայց չնայած գիտական այդ խոշոր հայտնագործությանը, կաուչուկը մեզ վրա թանկ էր նստում. Էթիլային սպիրտը, որից կաուչուկ էր պատրաստվում, ստացվում էր սննդամթերքներից՝ հացահատիկից, կարտոֆիլից: Մեկ տոննա էթիլային սպիրտ ունենալու համար, որից մեկ տոննա կաուչուկ է ստացվում, հարկավոր էր ծախսել չորս տոննա հացահատիկ կամ տասը տոննա կարտոֆիլ: Հապա որքա՜ն արժեքավոր սննդամթերք էր պահանջվում հարյուր հազարավոր տոննաներով կաուչուկ ստանալու համար...

Ահա թե ինչու, սովետական գիտնականները նորից որոնեցին և վերջապես գտան կաուչուկի համար մի այլ հումք՝ և՛ էժան, և՛ առատ: Դա կրաքարն էր, աղը և քարածուխը: Հետագայում հումք հանդիսացավ նաև բնական գազը: Այս գործում մեծ ծառայություն ունեն նաև հայ գիտնականները, ինժեներներն ու բանվորները:

# ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ-74

## ԱՌԱՋԻՆ ՓՈՒԼ

1. «Մենք այժմ համոզված ենք, որ Մայրլ Աղամնոնը սխալվել է»...

Ո՞վ է Մայրլ Աղամնոնը: Ո՞ր հարցում է սխալվել: Պատմեցե՛ք նրա մասին:

2. «Միայն ափսոս, որ ինքն այլևս երբեք չի տեսնի իր տունը»:

Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը: Ո՞րն է նյութի հիմնական գաղափարը:

3. «Գետինը ծածկված էր խեցգետիններով»:

Ինչո՞ւ, ի՞նչ էր պատահել: Ինչպե՞ս է բացատրում նկարագրված դեպքը նյութի հեղինակը:

4. «Լաց լինելով՝ ես բարձրանում եմ աստիճաններով»:

Ո՞վ էր լաց լինում և ինչո՞ւ:

---

Սինթետիկ կաուչուկի խոշորագույն գործարաններից մեկն էլ գտնվում է Սովետական Հայաստանում: Ո՞վ չի լսել Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատի անունը:

Իսկ ի՞նչ կարելի է պատրաստել նրա արտադրած «Նաիրիտ» հիանալի կաուչուկից: Մենք արդեն տեսանք, թե ինչպես լայն գործածություն գտավ կաուչուկը հենց սկզբից: Բայց ամենից մեծ տպավորությունը գործեցին ռետինից պատրաստված դողերը, որոնք հագցնում էին սկզբում կառքերի, իսկ հետո նաև ավտոմեքենաների անիվներին: Տեխնիկայի մեջ չտեսնված անակնկալ էր: Ասֆալտե ողորկ ճանապարհով այսպես չէին սուրա շքեղ ավտոմեքենաները, առանց օդով լցված թեթև դողերի: Ավտոդողը անհրաժեշտություն էր և նա ծնվեց...

Ահա թե ինչ դարձավ «ծառի արցունքը», որ այն հեռավոր ժամանակներում հայտնագործեց Կոլումբոսն իր ճանապարհորդություններից մեկի ժամանակ:

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ «ՊԻՈՆԵՐ» № 5

### ԽԱՉԲԱՌ-ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ

1. Սմետանա, 2. Ալբենիս: 3. «Սոգոմեն»: 4. Երգ: 5. Գիրկյա: 6. «Մեղու»: 7. Ամարա: 8. Արեգյա: 9. «Որորոց»: 10. Կաչալյակ: 11. Կորեկյան: 12. Իշխանյան: 13. Նովակ: 14. «Կամանչիդ»: 15. Դուդուկ: 16. «Կառնիկ»: 17. Կրյուկ: 18. Կալչալա:




Լույս է տեսնում 1923 թվականից:

# ՊԻՈՆԵՐ

№ 6 հունիս 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ 
ԵԿ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Ի., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 04460: Պատվեր 843: Տպաքանակ՝ 80200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/V 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

84





## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ կարդացեք 13 աշխարհագրական անուններ։*

*Նկար-առաջարկ՝ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*

*Այս բառաշղթայում տրված են տասնյոթ պետությունների և հանրապետությունների մայրաքաղաքների անուններ։*

*Գրված տառերի օգնությամբ փորձեցեք լուծել բառաշղթան։*

*Առաջարկ՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*




*Ճիշտ լուծելու դեպքում, կկարդաք հայկական ժողովրդական մի առած.*

*Նկար-առաջարկ՝ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ*